Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ

№ 5 ՄԱՐՏ 1955

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ

Նյութեր զրույցների համար



Օգնություն ագիտատորներին



Խմբագրության հասցեն. — Երևան, ՀԿԿ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին: Հեռախոս 2—52—78:



# ՆՈՐԱՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ ՆՇԱՆԱՎՈՐԵՆՔ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների ու տեղական Սովետների ընտրությունները նշանավորվեցին մեր երկրի համար կարևորագույն իրադարձություններով: Այս տարվա հունվարի 25—31-ը տեղի ունեցավ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի պլենումը, որը լսեց ընկեր Ն. Ս. Խրուշչևի զեկուցումը երկրում անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին և ընդունեց ծավալուն որոշում: Փետրվարին տեղի ունեցավ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության Գերագույն Սովետի երկրորդ սեսիան, որը քննարկեց ներքին և արտաքին քաղաքականության մի շարք կարևորագույն հարցեր և այդ առթիվ ընդունեց համապատասխան որոշումներ:

Մեր երկրի աշխատավորները մեծ ոգևորությամբ հավանություն տվեցին ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումի և ՍՍՌՄ Գերագույն Սովետի երկրորդ սեսիայի որոշումներին։ Նրանք գոհունակությամբ ընդունեցին, որ Կոմունիստական պարտիան, ինչպես միշտ, այնպես էլ այժմ իր գլխավոր խնդիրն է համարում ծանր ինդուստրիայի հետագա վերելքը, որը կազմում է ամբողջ ժողովրդական տնտեսության և մեր Հայրենիքի անխորտակելի պաշտպանության ամուր հիմքը, սովետական ժողովրդի բարեկեցության անշեղ աճի աղբյուրը։

Սովետական Միության Մինիստրների Սովետի Նախագահ ընկեր Ն. Ա. Բուլգանինի այն հայտարարությունը, որ Սովետական կառավարությունն իր ամբողջ գործունեության մեջ այսուհետև ևս անշեղորեն կվարի Կոմունիստական պարտիայի կողմից մշակված և մեր ժողովրդի ջերմ հավանությանն արժանացող քաղաքականություն՝ կոմունիստական հասարակարգի կառուցման, Սովետական պետության հզորության հետագա ամրապնդման, բանվոր դասակարգի ու կոլտնտեսային գյուղացիության դաշինքի ամրապնդման քաղաքականություն, խաղաղության և անվտանգության ամրապնդման քա-



ղաքականություն, արժանացավ մեր երկրի բոլոր աշխատավորների ջերմ հավանությանը։ Այդ քաղաքականությունն ապահովում է սոցիալիստական պետության հետագա ծաղկումը և ժողովրդի բարեկեցության բարձրացումը, մեր երկրի աշխատավորների կյանքի ամեն կերպ բարելավումը։

Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության իմաստուն ղեկավարության շնորհիվ ՍՍՌՄ մեծ բազմազգ ընտանիքում ծաղկում, բարգավաճում է Սովետական Հայաստանը։ Բավական է ասել, որ 1954 թվականին մեր ռեսպուբլիկան, համադրելի գներով, 87 անգամ շատ արտադրանք է թողարկել, քան 1913 թվականին։

Մտնելով սոցիալիստական մրցության մեջ, Հայաստանի աշխատավորները պարտավորություն ստանձնեցին ժամկետից շուտ կատարել հինգերորդ հնգամյակի առաջադրանքները։ Ծավալված սոցիալիստական մրցությունը տվեց իր արդյունքները։ Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը անցյալ տարվա պետական պլանը կատարեց 102 տոկոսով, իսկ համախառն արտադրանքի ծավալը 1953 թվականի համեմատությամբ աճեց 18 տոկոսով, 1950 թվականի համեմատությամբ՝ 79 տոկոսով, իսկ Նախապատե-

բազմյան՝ 1940 թվականի համեմատու-
թյամբ՝ ավելի քան 5 անգամ։ Հաջողությամբ
կատարելով անցյալ տարվա պլանները,
ռեսպուբլիկայի աշխատավորները նոր թա-
փով շարունակեցին սոցիալիստական մրր-
ցությունը հինգերորդ հնգամյակի եզրափա-
կիչ տարվա՝ 1955 թվականի առաջադրանքը
ժամկետից շուտ կատարելու համար, որը
տալիս է իր դրական արդյունքը։
Երևանի Ս. Մ. Կիրովի անվան գործարանի
բանվորների ու ինժեներա-տեխնիկական
անձնակազմը մտնելով ընտրությունների
պատվին ծավալված սոցիալիստական մրր-
ցության մեջ, զգալի հաջողությունների են
հասել նաև ընթացիկ տարվա հունվար և
փետրվար ամիսներին։ Գործարանն աշխա-
տում է համաչափ, բարձրացել է աշխատան-
քի արտադրողականությունը։ Անցած երկու
ամսում լավ արդյունքների են հասել նաև
Երևանի Ավտոդողերի, Ալավերդու Պղնձա-
ձուլական, Կիրովականի Մեքենաշինական
գործարանների կոլեկտիվները։
Ետ մնացող արտադրական ձեռնարկու-
թյունները մրցության շնորհիվ դուրս են գա-
լիս առաջավորների շարքը։ Դրանցից են՝
Երևանի Նուրբ բրդյա գործվածքների և Լե-
նինականի տեքստիլ կոմբինատները։



Երևանի Պոլիվինիլացետատ գործարանի
կոլեկտիվը որոշել է այս տարի հրաժարվել
դոտացիայից և մտնել եկամտաբեր արտա-
դրական ձեռնարկությունների շարքը։
Հաջողություններ են ձեռք բերել նաև ռես-
պուբլիկայի կոլտնտեսային աշխատավորնե-
րը։ 1954 թվականին, նախորդ տարվա հա-
մեմատությամբ, աճեց կովերի գլխաքանա-
կը, բարձրացավ նրանց կաթնատվությունը։
Գյուղատնտեսական մթերքների արտադրան-
քի աճի շնորհիվ 1954 թվականին, նախորդ
տարվա համեմատությամբ, մթերված է ա-
վելի շատ միս, կաթ, ձու, խաղող, կարտո-
ֆիլ, բանջարեղեն և այլն։
Սովետական Միության Կոմունիստական
պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Հուն-
վարյան պլենումը խնդիր դրեց մոտակա
5—6 տարում հացահատիկի տարեկան հա-
մախառն բերքը հասցնել առնվազը 10 մի-
լիարդ փթի։ Կենտկոմի պլենումը սահմանեց
անասնաբուծական մթերքների արտադրու-
թյունն ավելացնելու ծավալուն ծրագիր.
5—6 տարում երկու և երկուսից ավելի ան-
գամ ավելացնել անասնաբուծական հիմնա-
կան մթերքների արտադրությունը։ Անհրա-
ժեշտ է, որ պարտիական ու սովետական
կազմակերպությունները մոբիլիզացնեն արդ-

յունաբերության ու գյուղատնտեսության բնագավառների բոլոր աշխատողների ուժերը, նոր թափով ծավալեն սոցիալիստական մրցությունը՝ պարտիայի առաջադրանքը պատվով կատարելու համար։

Օրերս տեղի ունեցավ Հայաստանի պարտիական կազմակերպության ակտիվի ժողովը, որը լսեց ու քննության առավ ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Թովմասյանի զեկուցումը Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումի արդյունքների և Հայաստանի պարտիական կազմակերպությունների խնդիրների մասին։ Պարտիական ակտիվի ժողովը ցույց տվեց Հայաստանի կոմունիստների համախմբվածությունը ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի շուրջը, նրանց վճռականությունը պարտիայի լենինյան գիծը կոմունիզմի կառուցման բոլոր ասպարեզներում անշեղորեն կենսագործելու համար։ Ակտիվի ժողովը լիովին հավանություն տվեց ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումի որոշումներին և դրանք ընդունեց որպես գործունեության մարտական ծրագիր։

Մեր երկրի աշխատավորները լավ տրադիցիա ունեն. նրանք նորանոր հաջողություն-



ներով են նշանավորում յուրաքանչյուր համաժողովրդական տոն։ Մեր ռեսպուբլիկայի Գերագույն Սովետի և տեղական Սովետների ընտրությունների նախապատրաստության օրերը հարուստ են աշխատանքային նվաճումներով՝ մեր ժողովրդական տնտեսության բոլոր բնագավառներում։ Ինչպես միշտ, այս անգամ նույնպես Սովետական Հայաստանի աշխատավորները միահամուռ կերպով ձայն կտան կոմունիստների և անպարտիականների ժողովրդական բլոկի թեկնածուների օգտին։

Պարտիական կազմակերպությունների խնդիրն է ամրապնդել Գերագույն Սովետի և տեղական Սովետների ընտրությունների պատվին ծավալված սոցիալիստական մրցության հաջողությունները։ Մրցությունը շարունակվում է։ Ձեռք բերված հաջողությունները և առաջավորների հարուստ փորձի արմատավորումը հնարավորություն կտա արագացնելու աշխատանքի տեմպերը և հասնել նոր հաջողությունների։

Ագիտատորներն իրենց զրույցների ժամանակ պետք է լայնորեն մասսայականացնեն նախընտրական օրերի սոցիալիստական մրցության այդ առաջավորների փորձը։ Բայց ճիշտ չէր լինի կարծել, թե ագիտատորների խնդիրը միայն առաջավորների փորձի պրո-

պագանդան է։ Նրանց խնդիրն է՝ զրույցների ժամանակ խոսել նաև թերությունների մասին, այն թերությունների, որոնք գոյություն ունեն առանձին աշխատամասերում։ Որպեսզի ագիտացիան դառնա ներգործուն և տա իր անհրաժեշտ արդյունքը, անհրաժեշտ է, որ այն կապվի տվյալ գործարանի, ֆաբրիկայի, կոլտնտեսության և մյուս հիմնարկ-ձեռնարկությունների կոնկրետ խնդիրների հետ։ Միաժամանակ ագիտատորները պետք է աշխատեն, որպեսզի յուրաքանչյուր բանվոր ու կոլտնտեսական լավ հասկանա, որ իր աշխատանքից է կախված ամբողջ ձեռնարկության, ամբողջ կոլտնտեսության հաջողությունը։

Ծանր ինդուստրիայի հիման վրա մեքենայացված մեր կոլտնտեսային արտադրությունը բոլոր հնարավորություններն ունի ավելի շատ կենսամթերք տալու ժողովրդական տնտեսությանը։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսային աշխատավորները ջանք չեն խնայի գյուղատնտեսության բոլոր ճյուղերի եկամտաբերությունը ավելացնելու համար։

Ի պատիվ ընտրությունների՝ Սովետական Հայաստանի աշխատավորները կանեն ամեն ինչ, ավելի մեծ նվաճումների հասնելու համար։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ԲՅՈՒՋԵՆ

## Ք. ՋԱՐԱՑՅԱՆ

**Հայկական ՍՍՌ Ֆինանսների մինիստրի տեղակալ**

ՍՍՌՄ Գերագույն Սովետի երկրորդ սեսիան հաստատեց Սովետական պետության 1955 թվականի Պետական բյուջեն, որտեղ հստակ կերպով արտացոլվում է Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության քաղաքականությունը՝ երկրի ծանր ինդուստրիայի հետագա զարգացման, մեր ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի է՛լ ավելի բարձրացման, սոցիալիստական պետության տնտեսական հզորության և պաշտպանության ամրապնդման ուղղությամբ։

Բյուջեում նախատեսված եկամուտները լիովին ապահովում են ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի հետագա զարգացման վերաբերյալ պարտիայի և կառավարության առաջադրանքների ֆինանսավորումը։

1955 թվականի Պետական բյուջեն հաստատված է 590 միլիարդ 192 միլիոն 622 հազար ռուբլի եկամուտների գծով և 563 միլիարդ 482 միլիոն 491 հազար ռուբլի ծախսերի գծով։ Եկամուտների գերազանցումը ծախսերի նկատմամբ կազմում է 26 միլիարդ 710 միլիոն 131 հազար ռուբլի։ Ժողովրդական տնտեսության ֆինանսավորման համար անցյալ տարվա 326 միլիարդ 700 միլիոն ռուբլու դիմաց, այս տարի ծախսվելու է 335 միլիարդ 235 միլիոն 644 հազար ռուբլի։

Հայտնի է, որ մեր երկրի ծանր արդյունաբերությունը ապահովում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի՝ գյուղատնտեսության, թեթև և սննդի արդյունաբերության զարգացումը և դրանով իսկ հանդիսանում է սովետական ժողովրդի նյութական բարեկեցության անշեղ աճի աղբյուրը։ Այդ է պատճառը, որ ժողովրդական տնտեսության զարգացման համար նախատեսված միջոցների մեծ մասը՝ 163 միլիարդ 604 միլիոն 606 հազար ռուբլի առանձնացված է ծանր ինդուստրիայի ֆինանսավորման համար։ Այդ գումարը լրիվին ապահովում է ծանր ինդուստրիայի հետագա զարգացումը, որը եղել և մնում է սոցիալիստական էկոնոմիկայի հիմքերի հիմքը։



Դա հնարավորություն է տալիս նորագույն առաջավոր սարքավորումներով հագեցնելու մետալուրգիական,ածխային, էներգետիկ և քիմիական արդյունաբերության, մեքենաշինության և ծանր ինդուստրիայի ճյուղերը, որի շնորհիվ զգալի չափով կավելանա այդ ձեռնարկությունների կողմից թողարկվող արտադրանքը։ Ծանր արդյունաբերության արտադրանքը ներկայումս գրեթե երեք և կես անգամ ավելին է, քան նախապատերազմյան 1940 թվականին։

Ժողովրդական սպառման ապրանքների հետագա ավելացման և նրանց որակի բարելավման, ինչպես նաև առևտրական կազմակերպությունների ցանցի ընդարձակման նպատակով կատարվող ծախսերը բյուջեում կազմում են ավելի քան 27 միլիարդ 900 միլիոն ռուբլի։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտրոնական Կոմիտեի Հունվարյան պլենումը որոշեց մոտակա հինգ-վեց տարում հացահատիկի համախառ բերքը հասցնել տարեկան առնվազն 10 միլիարդ փթի և անասնաբուծական հիմնական մթերքների արտադրությունն ավելացնել երկու և երկուսից ավելի անգամ։

ՍՍՌՄ Պետական բյուջեում 1955 թվակա-

նին նախատեսվում է գյուղատնտեսության զարգացման համար հատկացումներ կատարել 65 միլիարդ 191 միլիոն 205 հազար ռուբլի։ Խոշոր ուշադրություն է դարձվելու խամ և խոպան հողերի յուրացման, գյուղատնտեսությունը նորագույն մեքենաներով ու սարքավորումներով հագեցնելու վրա։ Ընթացիկ տարում խամ և խոպան հողերը յուրացնելու համար ներդրվելու է 11 միլիարդ ռուբլի։

Բնակչության հարաճուն պահանջմունքները սննդամթերքներով և արդյունաբերության հումքով ապահովելու համար Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը նախատեսել են 1956 թվականի ընթացքում խամ և խոպան հողերի հաշվին հացահատիկային կուլտուրաների ցանքատարածությունները հասցնել 28—30 միլիոն հեկտարի։ 1955 թվականի բյուջեով այդ նպատակի համար եղած հատկացումները ապահովում են պարտիայի և կառավարության որոշման կենսագործումը։

ՄՏ կայանների պահպանման ծախսերի և նոր շինարարությունների համար բյուջեում հատկացումները կազմում են 32 միլիարդ 600 միլիոն ռուբլի, որը գերազանցում է



1953 թվականի հատկացումների նկատմամբ ավելի քան մեկ և կես անգամ։

Սովխոզների ֆինանսավորման համար առանձնացված է 9 միլիարդ 700 միլիոն ռուբլի, նույն թվում կապիտալ շինարարության համար 6 միլիարդ 600 միլիոն ռուբլի, կամ 25 տոկոսով ավելի, քան 1954 թվականին։

Ամրապնդվում են կոլտնտեսությունների հանրային տնտեսությունները, աճում են կոլտնտեսությունների և կոլտնտեսականների նատուրալ և դրամական եկամուտները։ Կոլտնտեսությունների էկոնոմիկայի և ֆինանսների ամրապնդման կարևորագույն ցուցանիշը համարվում է նրանց անբաժանելի ֆոնդերի անընդհատ ավելացումը և կապիտալ ներդրումների աճը։ 1955 թվականին կոլտնտեսությունները իրենց սեփական միջոցներից կապիտալ ներդրումներ են կատարելու մոտ 18 միլիարդ ռուբլի, 1952 թվականի 10 միլիարդ 900 միլիոն ռուբլու դիմաց։

Այս տարի Գյուղատնտեսական բանկը կոլտնտեսություններին և կոլտնտեսականներին կապիտալ շինարարության և այլ միջոցառումների համար տրամադրելու է 5 միլիարդ 200 միլիոն ռուբլու երկարատև վարկ, որը մեծ օգնություն է մեր գյուղատնտեսության վերելքը ապահովելու գործում։

Պետական բյուջեում զգալի գումար է նախատեսված սոցիալ-կուլտուրական միջոցառումների ֆինանսավորման համար։ 1955 թվականին այդ նպատակի համար հատկացված է մոտ 147 միլիարդ ռուբլի, որը 1954 թվականի հատկացումների համեմատությամբ ավելի է մոտ 6 միլիարդ ռուբլով։ Այդ թվում՝ լուսավորության և կուլտուրայի գծով ծախսվելու է 68 միլիարդ 446 միլիոն 475 հազար ռուբլի, առողջապահության և ֆիզիկական կուլտուրայի գծով՝ 30 միլիարդ 500 միլիոն ռուբլի, սոցիալական ապահովագրության ու սոցիալական ապահովության գծով՝ 45 միլիարդ 819 միլիոն 356 հազար ռուբլի և բազմազավակ ու միայնակ մայրերին նպաստավորման գծով՝ 5 միլիարդ ռուբլի։

Պարտիայի և կառավարության մշտական հոգատարությունը ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման մասին վառ կերպով արտացոլված է 1955 թվականի բյուջեում։ Այս տարի բարձրագույն ուսումնական հաստատություններում և տեխնիկումներում ընդունվելու են ավելի քան մեկ միլիոն մարդ։

Ընդլայնվում է երեկոյան և հեռակա ուսուցումը, որը պրակտիկ աշխատողներին հնարավորություն է տալիս առանց արտա-



դրությունից կտրվելու ստանալ բարձրագույն և միջնակարգ կրթություն։

Գիտա-հետազոտական աշխատանքների համար հատկացված է ավելի քան 10 միլիարդ ռուբլի։

Ընթացիկ տարում հիվանդանոցներում, դիսպանսերներում և ծննդաբերական տներում մահճակալների քանակը ավելանալու է 60 հազարով։ 1950 թվականի համեմատությամբ, 1955 թվականին աճը կազմում է 28,6 տոկոս՝ հնգամյա պլանով նախատեսված 20 տոկոսի դիմաց։ Բնակչության առողջապահության սպասարկումը է՛լ ավելի լավ ապահովելու համար զգալի միջոցներ են առանձնացված պոլիկլինիկաները, հիվանդանոցները, բուժհիմնարկները սարքավորումներով հագեցնելու և դեղորայքով ապահովելու համար։

Սովետական կառավարությունը մշտական հոգատարություն է ցուցաբերում աշխատավորների բնակարանային պայմանները բարելավելու մասին։ 1951—1954 թվականների ընթացքում բնակարանային շինարարության ներդրումները կազմեցին 80 միլիարդ ռուբլի, իսկ այս տարի բնակարանային շինարարության համար ծախսվելու է 24 միլիարդ 500 միլիոն ռուբլի։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի Կենտկոմը և ՍՍՌՄ Մինիստրների Սովետը վերջին ժամանակաշրջանում մի շարք միջոցառումներ ձեռնարկեցին պետական ապարատի աշխատանքը բարելավելու, ավելորդ ծախսերը կրճատելու ուղղությամբ։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը հաստատակամորեն և հետևողական կերպով վարում են խաղաղասիրական քաղաքականություն, բայց միևնույն ժամանակ մշտապես հոգ են տանում մեր երկրի պաշտպանունակությունը ամրապնդելու համար։ 1955 թվականին պաշտպանության նպատակին հատկացված ծախսերը կազմում են 112 միլիարդ 100 միլիոն ռուբլի կամ բյուջեի ծախսերի 19,9 տոկոսը։

Սովետական Միության Պետական բյուջեն եղել և մնում է երկրի տնտեսական խաղաղ զարգացման բյուջե։ Այդ մասին են վկայում ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման և սոցիալ-կուլտուրական միջոցառումների համար արված հատկացումները, որոնք կազմում են բյուջեի ընդհանուր ծախսերի գերակշռող մասը։

Պետական բյուջեով խոշոր հատկացումներ է կատարվել միութենական ռեսպուբլիկաների ժողովրդական տնտեսությունը զար-



գացնելու համար։ Միութենական ռեսպուբլիկաների 1955 թվականի Պետական բյուջեները հաստատվել են 127 միլիարդ 335 միլիոն 221 հազար ռուբլի գումարով, այդ թվում ռեսպուբլիկական բյուջեների գծով՝ 52 միլիարդ 393 միլիոն 823 հազար ռուբլի և տեղական բյուջեների գծով՝ 74 միլիարդ 941 միլիոն 398 հազար ռուբլի, կամ 1954 թվականի համեմատությամբ աճել է ավելի քան 7 միլիարդ 700 միլիոն ռուբլով։ Այս թվերը ցայտուն կերպով արտահայտում են Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության հետևողական կենսագործումը։

Սովետական Միության Պետական բյուջեի հաջող կատարումը կնպաստի մեր Հայրենիքի հզորությունը է՛լ ավելի ամրապնդելուն և Կոմունիստական պարտիայի առաջադրած խնդիրները ժամանակին կենսագործելուն։

---

# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱՄՈՒՐ ՀԵՆԱՐԱՆՆ Է ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

Պ. ՎԱՍԻԼԵՎ

ՍՍՌՄ Գերագույն Սովետի երկրորդ սեսիան լսեց և լայնորեն քննարկեց Մինիստրների Սովետի Նախագահի առաջին տեղակալ և ՍՍՌՄ Արտաքին գործերի մինիստր Վ. Մ. Մոլոտովի «Միջազգային դրության և ՍՍՌՄ կառավարության արտաքին քաղաքականության մասին» զեկուցումը։ Ընկ. Վ. Մ. Մոլոտովի զեկուցման մեջ տրված է արդի միջազգային դրության խոր վերլուծությունը և բազմակողմանիորեն շարադրված են Սովետական պետության արտաքին քաղաքականության անսասան սկզբունքները։

Սովետական պետության արտաքին քաղաքականությունը պարզ է և կոնկրետ։ Սովետական կառավարությունը հաստատուն կերպով կանգնած է խաղաղության դիրքերում և պաշտպանում է խաղաղության գոր-



ծը, հետևողականորեն պայքարում է միջազգային լարվածության թուլացման և բոլոր երկրների հետ բարեկամական հարաբերություններ հաստատելու համար։

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո անցած տասը տարիների ընթացքում լուրջ փոփոխություններ են տեղի ունեցել միջազգային իրադրության մեջ։ Նախ և առաջ փոխվել է ուժերի հարաբերակցությունը սոցիալիզմի լագերի և կապիտալիզմի լագերի միջև։ Ինչպես հայտնի է, մինչ երկրորդ համաշխարհային պատերազմը Սովետական Միությունը միակ սոցիալիստական պետությունն է եղել, որը ավելի քան քսանհինգ տարիների ընթացքում գտնվել է կապիտալիստական շրջապատման մեջ։

Որպես երկրորդ համաշխարհային պատերազմի արդյունք կապիտալիզմից անջատվեցին Եվրոպայի և Ասիայի մի ամբողջ շարք երկրներ, որոնք կանգնեցին սոցիալիստական վերափոխումների ուղու վրա։ Այսպիսով, կապիտալիզմի համաշխարհային լագերի կողքին կազմվեց սոցիալիզմի և դեմոկրատիայի համաշխարհային լագերը, Սովետական Միության և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի գլխավորությամբ, որը բացի Սովետական Միությունից

և Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայից համախմբում է այնպիսի պետություններ, ինչպես՝ Լեհաստանը, Չեխոսլովակիան, Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան, Հունգարիան, Ռումինիան, Բուլղարիան, Ալբանիան, Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկան, Մոնղոլական Ժողովրդական Ռեսպուբլիկան, Վյետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկան։ Ներկայումս սոցիալիզմի լագերը միավորում է Եվրոպայի բնակչության մոտ կեսը և Ասիայի բնակչության կեսից փոքր ինչ պակաս։

Սակայն իմպերիալիստական լագերի երկրների կառավարող շրջանները և առաջին հերթին ԱՄՆ-ի մոնոպոլիստները, չեն ցանկանում հաշտվել ստեղծված իրադրության հետ։ ԱՄՆ-ի իմպերիալիստները կուզենային, ինչպես նշում է Վ. Մ. Մոլոտովը, ժողովրդա-դեմոկրատական երկրներն «ազատել» բանվորների և գյուղացիների ռևոլյուցիոն դաշինքով ստեղծված պետական իշխանությունից և այնտեղ նստեցնել նրանց, ովքեր իրենց հաճելի են, այսինքն՝ տապալել պատերազմից հետո այստեղ հաստատված նոր սոցիալիստական և դեմոկրատական կարգերը ու նորից նրանց վզին փաթաթել շահագործողների սրտին այնքան սիրելի



կապիտալիզմի ռեժիմը, աշխատավորների շահագործման ռեժիմը, կապիտալիստների և կալվածատերերի տիրապետության ռեժիմը։

Բայց պատմության անիվը ետ շրջել չի կարելի։ Սոցիալիզմի լագերի երկրները երբեք չեն համաձայնվի նորից իրենց վզին կրելու իմպերիալիզմի լուծը և համառորեն կպաշտպանեն իրենց նվաճումները, իրենց իրավունքը՝ ապրելու և աշխատելու առանց կապիտալիստների ու կալվածատերերի և կառուցելու սոցիալիստական հասարակարգ։

Միջազգային քաղաքականության մեջ ետպատերազմյան ժամանակաշրջանում սուր կերպով նշմարվել է երկու ուղղություն։ Եթե Սովետական Միությունը և սոցիալիստական լագերի բոլոր երկրները պաշտպանելով խաղաղության ու սոցիալիզմի շահերը, ամբողջ ուժով ձգտում են նվազեցնել միջազգային լարվածությունը, ապա ԱՄՆ-ը և նրա հետևից գնացող Անգլիան, Ֆրանսիան ու մի քանի այլ երկրներ պատերազմի սանձազերծման, դեմոկրատական երկրների դեմ ուղղված ամեն տիպի բլոկների ու խմբավորումների ստեղծման կուրս են վերցրել։ Սա իր վառ արտահայտությունն է գտնում ԱՄՆ-ի կողմից ազդարարված «ուժի դիրքե-

րից» ելնող ագրեսիվ քաղաքականության մեջ։

Հայտնի է, որ Սովետական Միության խաղաղասիրական ջանքերի շնորհիվ վերջին տարիներս ստեղծվեցին շատ վիճելի հարցերի կարգավորման նախադրյալներ։ Այս մասին, մասնավորապես խոսում են Բեռլինի և Ժնևի խորհրդակցությունների գումարման փաստերը, որոնց ժամանակ սովետական դելեգացիան առաջ քաշեց մի ամբողջ շարք առաջարկություններ՝ ուղղված միջազգային լարվածության նվազեցման նպատակին։ Բայց ԱՄՆ-ը ամեն կերպ դիմադրում էր Բեռլինի խորհրդակցությունում գերմանական հարցի կապակցությամբ համաձայնեցված որոշումների ընդունմանը, մերժեց սովետական առաջարկները Եվրոպայում կոլեկտիվ անվտանգության սիստեմ ստեղծելու և սպառազինությունների ընդհանուր կրճատման վերաբերյալ համաշխարհային կոնֆերանս գումարելու մասին։

Ժնևի խորհրդակցությունը, որին, չնայած ԱՄՆ-ի դիմադրությանը, մասնակցեցին բոլոր հինգ խոշոր տերությունները, ներառյալ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան, համաձայնության հասավ Վյետնամում, ինչպես նաև Լաոսում և Կամբոջայում պատե-



րազմի դադարեցման վերաբերյալ, չնայած որ Միացյալ Նահանգները ձգտում էին ինչ գնով էլ լինի խանգարել այս համաձայնագրերի ձեռք բերմանը։ Համաշխարհային հասարակայնությունը Ժնևի խորհրդակցության արդյունքները գնահատեց որպես ագրեսիվ ուժերի լուրջ պարտություն և որպես խաղաղասեր ուժերի էական հաղթանակ։

Ժնևի խորհրդակցությունից հետո ամերիկյան դիվանագիտությունը ամեն ինչ անում է, որպեսզի խափանի Ժնևում ձեռք բերված համաձայնեցված որոշումների իրագործումը։ ԱՄՆ-ը հապճեպորեն կոնֆերանս հրավիրեց Մանիլայում, որտեղ պայմանագիր ստորագրվեց այսպես կոչված «Հարավ-Արևելյան Ասիայի կոլեկտիվ պաշտպանության» (ՍԵԱՏՕ) վերաբերյալ, որի նպատակն է Ասիայի ժողովուրդների ազգային-ազատագրական շարժման խեղդումը։ Այս պայմանագրի սուր ծայրը բացահայտորեն ուղղված է Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի դեմ։ ԱՄՆ-ը ապօրինաբար զավթել է Չինաստանին պատկանող Տայվան կղզին, ինչպես նաև Պենխուլեդաո կղզիները, խրախուսում է Չան Կայ-շիի հանցագործ բանդայի ավազակային գործողությունները ընդդեմ Ժողովրդական Չինաս-

տանի, չին ժողովրդին բացեիբաց սպառնում է պատերազմով։

Չին ժողովուրդը, չնայած սպառնալիքներին, լի է Տայվան կղզին և մյուս կղզիները ազատագրելու վճռականությամբ և երբեք չի հաշտվի ագրեսորների և՛ ոչ մի ոտնձգության հետ իր տերիտորիայի նկատմամբ։ Չին ժողովրդի այս արդարացի ցանկությունները գտնում են սովետական ժողովրդի լիակատար աջակցությունը և վայելում ամբողջ պրոգրեսիվ մարդկության համակրանքը։

Եվրոպայում ԱՄՆ-ի «ուժի դիրքերից» եկող ագրեսիվ քաղաքականությունն իր արտահայտությունն է գտնում Եվրոպայի որոշ պետությունների բլոկների և խմբավորումների ստեղծման մեջ՝ ընդդեմ այլ պետությունների։

Կոլեկտիվ անվտանգության սիստեմ ստեղծելու փոխարեն ԱՄՆ-ը փորձում է եվրոպական ժողովուրդների վզին փաթաթել այսպես կոչված «Եվրոպական պաշտպանական միավորումը» (ԵՕՍ)։ Այն բանից հետո, երբ Ֆրանսիայի Ազգային Ժողովը ժողովրդական լայն մասսաների ճնշման տակ մերժեց ամերիկյան այս պլանը, երևան եկան լոնդոնյան և փարիզյան համաձայնագրերը, որոնք ևս նախատեսում



էին Արևմտյան Գերմանիայի սպառազինումը։

Ընդսմին ԱՄՆ-ը, ինչպես նաև Անգլիան ու Ֆրանսիան, ոտնահարում են գերմանական միլիտարիզմի վերածնում թույլ չտալու մասին միջազգային հայտնի համաձայնագրերը և անում ամեն ինչ, որպեսզի անցկացնեն փարիզյան համաձայնագրերի վավերացումը և արագացնեն նրանց իրագործումը։

Սովետական Միությունը, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան և ժողովրդական դեմոկրատիայի մյուս երկրները գտնում են, որ փարիզյան համաձայնագրերի վավերացումն ու իրագործումը լուրջ կերպով կբարդացնեն միջազգային իրադրությունը, կծնեն նոր համաշխարհային պատերազմի սանձազերծման վտանգ։ Փարիզյան համաձայնագրերի իրագործումը ծանրագույն հարված կհասցնի գերմանական ժողովրդի շահերին և երկար ժամանակով անհնարին կդարձնի Գերմանիայի միավորումը։

Այս պայմաններում Սովետական Միությունը և մյուս խաղաղասեր պետությունները հարկադրված են ձեռնարկելու համապատասխան միջոցներ իրենց անվտանգության հետագա ամրապնդման և Եվրոպայում խաղաղության պահպանման համար։

Սովետական Միության նախաձեռնությամբ 1954 թվականի վերջին Մոսկվայում տեղի ունեցավ Եվրոպայում խաղաղության և անվտանգության պահպանման վերաբերյալ եվրոպական երկրների խորհրդակցություն, որտեղ միահամուռ կերպով ընդունվեց Դեկլարացիա, որի մեջ խիստ նախազգուշացում է արվում պատերազմի հրձիգներին։ «Մոսկվայի խորհրդակցության մասնակից ութ պետությունները,— հայտարարեց ընկ. Վ. Մ. Մոլոտովը,— որոշակիորեն հայտարարեցին, որ Փարիզի համաձայնագրերը վավերացվելու դեպքում իրենք բոլոր անհրաժեշտ միջոցները կձեռնարկեն իրենց միջազգային դիրքերն ամրապնդելու և խաղաղությունն ու Եվրոպայի անվտանգությունն ապահովելու համար։ Դա մեզանից նոր մեծ ջանքեր և նյութական զոհողություններ կպահանջի։ Բայց, վստահ եղեք, պարոնայք միլիտարիստներ, մենք դրա առջև կանգ չենք առնի»։

Արդեն այժմ նախապատրաստություն է տարվում այդ երկրների բարեկամության, համագործակցության և փոխադարձ օգնության պայմանագիր կնքելու, ինչպես նաև միացյալ ռազմական հրամանատարություն ստեղծելու ուղղությամբ այն դեպքում, եթե



արևմտյան տերությունները ստեղծեն ռազմական խմբավորումներ Արևմտյան Գերմանիայի մասնակցությամբ։

Վերջին ժամանակներս Ամերիկայի Միացյալ Նահանգներում որոշ պետական գործիչներ և գեներալներ բացեիբաց ատոմային պատերազմի կոչ են անում։ Բայց և այնպես ռազմամոլ գեներալները չպետք է մոռանան, որ ԱՄՆ-ը վաղուց արդեն չի հանդիսանում ատոմային զենքի մոնոպոլիստ, իսկ ջրածնային զենքի արտադրության մեջ նա հետամնացների վիճակում է գտնվում։

Ցանկանալով կանխել ատոմային զենքի գործադրումը, Սովետական Միությունը Միացյալ Նահանգների կառավարությանը առաջարկեց անհետաձգելիորեն համաձայնագիր կնքել ատոմային զենքի արգելման և ատոմային էներգիան բացառապես խաղաղ նպատակներով օգտագործելու մասին։ Բայց այս հարցում ևս Սովետական կառավարությունը չի հանդիպում աջակցության ԱՄՆ-ի կառավարության կողմից։

Նորմալ միջազգային առևտրի զարգացման բնագավառում ԱՄՆ-ի կողմից հարուցվող բազմաթիվ խոչընդոտները, ագրեսիվ ռազմական բլոկները, ուրիշ պետությունների տերիտորիաների վրա ստեղծվող ռազմա-

կան բազաները, սպառազինությունների մրցավազքը և ատոմային պատերազմի ըսպառնալիքը՝ այս բոլորը վկայում են այն մասին, որ «ուժի դիրքերից» ելնող ԱՄՆ-ի ագրեսիվ քաղաքականությունը լուրջ սպառնալիք է ժողովուրդների խաղաղության և անվտանգության։

Սովետական Միությունը, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան և սոցիալիստական լագերի մյուս երկրները այսուհետև ևս կամրապնդեն սերտ բարեկամությունն ու փոխադարձ օգնությունը և հաստատապես ու անհողդողդ կանցկացնեն խաղաղության ամրապնդման ու պահպանման քաղաքականություն։ Այս քաղաքականությունը հիմնըված է տարբեր հասարակական սիստեմների գոյակցության լենինյան սկզբունքների վրա։ Սոցիալիստական լագերի ժողովուրդները համոզված են, որ գոյակցության պայմաններում լիովին հնարավոր է մի ամբողջ պատմական ժամանակաշրջանի ընթացքում պահպանել խաղաղությունը և խաղաղ հարաբերությունները ժողովուրդների միջև։

Անհրաժեշտ է, ինչպես մատնանշվում է երկրորդ սեսիայի կողմից ընդունված և մյուս պետությունների պառլամենտներին ուղղված ՍՍՌ Միության Գերագույն Սովետի Դեկլա-



րացիայի մեջ, որ այդ հարաբերությունները կառուցվեն այնպիսի սկզբունքների վրա, ինչպիսիք են հավասարությունը և ներքին գործերին չմիջամտելը, չհարձակվելը և ուրիշ պետությունների տերիտորիալ ամբողջականության նկատմամբ ոտնձգություններ չկատարելը, նրանց սուվերենությունը և ազգային անկախությունը հարգելը։ Այս սկզբունքներն արդեն դրված են այնպիսի երկրների հարաբերությունների հիմքում, ինչպիսիք են Սովետական Միությունը, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան, Հնդկաստանը և այլ ժողովուրդներ։

Սովետական Միության աշխատավորների, ինչպես և բոլոր խաղաղասեր ժողովուրդների մեջ ԱՄՆ-ի ագրեսիվ քաղաքականությունը առաջ է բերում զայրույթի և վրդովմունքի զգացմունք։ Ջերմորեն աջակցելով և խրախուսելով Սովետական կառավարության խաղաղասիրական արտաքին քաղաքականությունը, մեր ժողովուրդը Կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարությամբ գնում է դեպի նորանոր հաղթանակներ տնտեսական և կուլտուրական շինարարության, սոցիալիստական պետության հզորության ամրապնդման, խաղաղության մեծ գործի ամրապնդման և պահպանման բնագավառում։

---

# ԿԱՆԱՆՑ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՕՐԸ

ԱՐՇԱԼՈՒՅՍ ԲԱԲԱՅԱՆ
Ֆիլոլոգիական գիտությունների թեկնածու,
դոցենտ

*Կանանց Միջազգային օրը, մարտի 8-ը, մեր ժողովուրդը նշում է սովետական երկրի աշխատավորների նյութական բարեկեցության ծաղկման, մեր Հայրենիքի հզորության է՛լ ավելի ամրապնդման պայմաններում։*

*Մեր երկրի արդյունաբերության համախառն արտադրանքը 1954 թվականին, 1953 թվականի համեմատությամբ, աճել է 13 տոկոսով և 1950 թվականի համեմատությամբ՝ 65 տոկոսով։ Անցյալ տարի շահագործման հանձնվեց ատոմային էներգիայով աշխատող առաջին արդյունաբերական էլեկտրակայանը՝ 5 հազար կիլովատ կարողությամբ։ Արդյունաբերության, շինարարության մեջ և տրանսպորտում արմատավորվեցին ավելի քան 900 հազար գյուտեր, տեխնիկական կատարելագործումներ և ռացիոնալիզատորական առաջարկներ։*

*Այժմ, ինչպես միշտ, Կոմունիստական*



*պարտիան և Սովետական կառավարությունը առանձնահատուկ ուշադրություն են դարձնում ծանր արդյունաբերության զարգացման վրա։ Ծանր արդյունաբերության մեջ ներդրվում է երկրի ժողովրդական տնտեսության զարգացմանը հատկացվող միջոցների հիմնական մասը։ Դա հնարավորություն է տալիս լրջորեն ավելացնելու մետալուրգիական, ածխային, նավթային, էներգետիկ և քիմիական արդյունաբերության, մեքենաշինության և ծանր ինդուստրիայի մյուս ճյուղերի արտադրությունը։*

*1955 թվականին մեր արդյունաբերության համախառն արտադրանքի ընդհանուր ծավալը 1954 թվականի համեմատությամբ կաճի ավելի քան 9 տոկոսով, իսկ 1950 թվականի համեմատությամբ՝ 80 տոկոսով։ Ծանր արդյունաբերության արտադրանքը հինգերորդ հնգամյակում կավելանա 84 տոկոսով։*

*Մեծ հաջողությունների է հասել նաև մեր ռեսպուբլիկայի արդյունաբերությունը։ Ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկությունները ժամկետից շուտ և որակական բարձր ցուցանիշներով կատարեցին 1954 թվականի պլանը։ Արդյունաբերության համախառն արտադրանքը 1954 թվականին, 1950 թվականի համեմատությամբ, աճեց*

79,2 տոկոսով, իսկ 1940 թվականի համեմատությամբ՝ 4,5 անգամ։ Միայն վերջին 6 տարվա ընթացքում ռեսպուբլիկայում կառուցվել են 70 արդյունաբերական ձեռնարկություններ։

1954 թվականին է՛լ ավելի ամրապնդվեց գյուղատնտեսության նյութական-տեխնիկական բազան։ Գյուղատնտեսությունը անցյալ տարի ստացավ 137 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած), 46 հազար շարամիջյան մշակության տրակտոր, 37 հազար հացահատիկային կոմբայն և հարյուր հազարավոր գյուղատնտեսական այլ մեքենաներ։

Հաջողությամբ կենսագործվում է երկրում հացահատիկի հետագա ավելացման և խոպան ու խամ հողերի յուրացման մասին պարտիայի և կառավարության որոշումը։ Անցյալ տարի խոպան և խամ հողերից ստացվեց հիանալի բերք, իսկ այս տարվա բերքի համար արդեն հերկված է 17 միլիոն 600 հազար հեկտար խոպան և խամ հող։

ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումը գյուղատնտեսության ֆրոնտի աշխատողներին կոչ արեց՝ բոլոր ջանքերը գործադրել հողագործության և անասնաբուծության հետագա վերելքի նախատեսված ծրագիրը հաջողությամբ կատարելու, երկիրը գյուղատն-



տեսական մթերքներով լիովի բավարարելու համար։

Սովետական կանանց սրբազան պարտքն է ոչ մի ջանք չխնայել առաջիկա 5—6 տարում հացահատիկի տարեկան բերքը տասը միլիարդ փթի հասցնելու և անասնաբուծական հիմնական մթերքների արտադրության քանակը երկու և երկուսից ավելի անգամ ավելացնելու համար։

Սոցիալիստական գյուղատնտեսության զարգացման բնագավառում խոշոր հաջողություններ է ձեռք բերվել նաև մեր ռեսպուբլիկայում։ Ռեսպուբլիկայի ցանքատարածությունները, 1913 թվականի համեմատությամբ, ավելացել են 1,4 անգամ, իսկ 1919 թվականի համեմատությամբ՝ 5,7 անգամ։ Կոլտնտեսությունների 95 տոկոսը սպասարկվում է մեքենա-տրակտորային կայանների կողմից։ ՄՏԿ-ների տրակտորային պարկի հզորությունը միայն 1953 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, ավելացավ 2,7 անգամ, իսկ կոմբայնների թիվը՝ 2,5 անգամ։ 1940 թվականի համեմատությամբ, 1953 թվականին կոլտնտեսությունների դրամական եկամուտներն աճել են ավելի քան 2 անգամ, անբաժանելի ֆոնդերը՝ մոտ 4 ան-

գամ, արտադրության հիմնական միջոցները՝ համարյա 3,5 անգամ և այլն։

Տարեցտարի բարձրանում է սովետական ժողովրդի նյութական բարեկեցությունը և կյանքի կուլտուրական մակարդակը։

ՍՍՌՄ-ի ազգային եկամուտը, 1954 թվականի ընթացքում, նախորդ տարվա հետ համեմատած, աճել է 11 տոկոսով։ 1954 թ. ընթացքում ժողովրդական սպառման ապրանքների գների թվով 7-րդ իջեցումը սովետական երկրի քաղաքացիներին տարեկան միջին հաշվով տվեց 20 միլիարդ ռուբլու օգուտ։

1955 թվականը կլինի ժողովրդի նյութական բարեկեցության և կյանքի կուլտուրական մակարդակի հետագա բարձրացման տարի։ Ազգային եկամուտը անցյալ տարվա համեմատությամբ կավելանա 10 տոկոսով։ Կաճի բանվորների և ծառայողների աշխատավարձի ֆոնդը, կավելանան կոլտնտեսականների եկամուտները, կընդարձակվի բնակարանային շինարարությունը։

1954 թվականին մեծ հաջողություններ են ձեռք բերվել սոցիալիստական կուլտուրայի բոլոր բնագավառներում։ Միջնակարգ դպրոցների 8—10-րդ դասարանների սովորողների թիվը 1953 թվականի համեմատությամբ



ավելացավ 756 հազար մարդով, իսկ 1950 թվականի համեմատությամբ՝ մեկ միլիոն 644 հազար մարդով։ Բացի այդ, անցյալ տարի 3 միլիոն մարդ առանց արտադրությունից կտրվելու սովորում էր երեկոյան և հեռակա բարձրագույն ու միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում, բանվոր և գյուղական երիտասարդության հանրակրթական դպրոցներում։

1954 թվականին ավելի ընդարձակվեց գրադարանների և ակումբների ցանցը։ Այժմ երկրում կա մոտ 390 հազար գրադարան, որոնցում գրքերի թիվը հասնում է 1,2 միլիարդ օրինակի, կինոսարքեր՝ 54 հազար և այլն։

Անցյալ տարի ՍՍՌՄ-ում ավելի քան 5,5 միլիոն երեխաներ ու դեռահասներ հանգստացան պիոներական ճամբարներում, մանկական սանատորիաներում և ամառանոցային այլ վայրերում։ Անցած տարի մեծ չափերով ընդարձակվեց ծննդատների, մանկապարտեզների, մանկամսուրների, հիվանդանոցների, սանատորիաների և հանգստի տների ցանցը։

Մեր ռեսպուբլիկայում նույնպես աչքի ընկնող նվաճումներ են ձեռք բերված աշխատավորների նյութական բարեկեցությունը և

կյանքի կուլտուրական մակարդակը բարձրացնելու ուղղությամբ։ 1913 թվականի համեմատությամբ հիվանդանոցների թիվն ավելացել է 31 անգամ, դեղատներինը՝ 11 անգամ։ Եթե 1913 թվականին Հայաստանում կար ընդամենը 57 բժիշկ, ապա 1953 թվականին բժիշկների թիվը հասավ 2.664-ի։

Սովետական Հայաստանը դարձել է համատարած գրագիտության երկիր։ Հաջողությամբ իրականացվում է պարտադիր 7-ամյա կրթությունը՝ գյուղական վայրերում և տասնամյա պարտադիր կրթությունը՝ քաղաքներում։ Ռեսպուբլիկայում կա 1.177 մասսայական դպրոց, որտեղ սովորում են մոտ 300.000 աշակերտ և աշխատում են ավելի քան 16 հազար ուսուցիչ։ Նախասովետական Հայաստանում չկար ոչ մի բարձրագույն ուսումնական հաստատություն, իսկ այժմ ռեսպուբլիկայում կա 12 ստացիոնար բուհ և հեռակա 5 ինստիտուտ։ Միայն անցյալ տարի ռեսպուբլիկայի բուհերը երկրին տվեցին 2.462 շրջանավարտներ, որից 1.371 մանկավարժ, 164 բժիշկ, 181 անասնաբույժ և զոոտեխնիկ, 271 ինժեներ, 196 ագրոնոմ, 73 արվեստի աշխատող, 39 տնտեսագետ և այլն։

Ռեսպուբլիկան ծածկված է կուլտուր-լու-



սավորական հիմնարկների խիտ ցանցով, ուր գործում են 1.200 ակումբ, 1.500 գրադարան, 362 կինոսարքավորում, 52 կուլտուրայի տուն, 10 թատրոն, 18 թանգարան և այլն։

Լայն սպառման ապրանքների մանրածախ գների սիստեմատիկ իջեցման շնորհիվ մեծ չափերով ավելացել է ռեսպուբլիկայի բանվոր-ծառայողների ռեալ աշխատավարձը և կոլտնտեսականների եկամուտները։

Մեր գեղեցիկ և երջանիկ կյանքի կառուցման գործում իր մեծագույն մասնակցությունն է ունեցել սովետական կինը։ Մեծ Հոկտեմբերի հզոր ձեռքով ազատագրված կինը պատմության մեջ առաջին անգամ իրավունք է ստացել բոլոր ասպարեզներում գործելու և առաջ գնալու։ Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը կնոջ մտավոր, աշխատանքային կարողությունների ծաղկման համար ոչ մի ջանք չեն խնայել։ Մեր Միության մեջ, 2,5 միլիոնից ավելի կին աշխատում են գիտության և տեխնիկայի տարբեր բնագավառներում։ Մեր Հայրենիքի հանդեպ կատարած սխրագործությունների համար 2346 կնոջ շնորհված է Սովետական Միության Հերոսի և Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի կոչում։ Սո-

վետական Միությունում կան մոտ 60 հազար կին գիտական աշխատողներ։

Կոմունիստական պարտիայի և մեր պետության ջերմ հոգատարության շնորհիվ մեր երկրի բարձրագույն կրթություն ունեցողների մոտավորապես կեսը կանայք են, գիտական, ուսումնական և լուսավորական ֆրոնտում աշխատող կանանց թիվը ավելի քան 2.700 հազար է։ 147 կին մասնակցել են Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 19-րդ համագումարին։

2.209 կին հանդիսանում են միութենական և ավտոնոմ ռեսպուբլիկաների Գերագույն Սովետների դեպուտատներ։ Կես միլիոնից ավելի կանայք աշխատավորների դեպուտատների տեղական Սովետներում են ընտրված։ Սովետական կանայք բոլոր ասպարեզներում մրցում են տղամարդկանց հետ։ 741 կին Ստալինյան մրցանակի լաուրեատներ են։

Համաժողովրդական սեր են վայելում մեր խիզախ կանայք։ Երկիրը ճանաչում է Մոլոտովի անվան կոլտնտեսության կթվորուհի Ագրիպինա Իլկին, որը 1954 թվականին յուրաքանչյուր կովից կթել է 5.196 կիլոգրամ կաթ, «Նովայա ժիզն» կոլտնտեսության վուշի աճեցման վարպետ Եվդոկիա Տուրովային,



որը մեկ հեկտարից հավաքել է 10 ցենտներ վուշի մանրաթել և 9 ցենտներ սերմ։

Մեր երկիրը հպարտանում է արդյունաբերության ասպարեզի կին նորարարների՝ Լիդիա Կորոբելնիկովայի, Նինա Ամելչիկովայի, Օլգա Ժանդարովայի անուններով, որոնք իրենց գյուտերով և առաջարկներով միլիոնների շահույթ են տալիս պետությանը։

Սովետական Հայաստանի կանայք ոչինչ չեն խնայում իրենց քույրերից ետ չմնալու համար։ Խանդավառ աշխատանքով աչքի են ընկնում Ապակե-տարայի գործարանի դիրեկտոր Մարիա Բաբաջանյանը, ռեսպուբլիկայի կոմունալ տնտեսության մինիստր Նունիկ Թուխիկյանը, Վեդու շրջանի Շիրազլու գյուղի կոլտնտեսուհի Մայախանում Բայրամ կըզի Նաբիևան, Երևանի նուրբ մահուդի գործարանի մանածագործ հրահանգչուհի Աննա Կատելնիկովան, իր առաջադրանքները 300 տոկոսով կատարող՝ Պոլիվինիլացետատ գործարանի մամլող Էլիչկա Դալլաքյանը, Կիրովականի Կորդի ֆաբրիկայի 436 իլիկի փոխարեն 654 իլիկի սպասարկող մանածագործուհի Նինա Զուլիան և բազմաթիվ ուրիշները։

Սովետական կինը երջանիկ է ոչ միայն աշխատանքային ասպարեզում, հասարակա-

կան կյանքի բնագավառում, այլև անձնական կյանքում։ Առաջին անգամ մեզ մոտ է, որ մայր կինը դարձել է պետության հոգատարության առարկան։ Տաս տարվա ընթացքում, մինչև 1954 թվականի մայիս ամիսը, 42.252 կին արժանացել է «Հերոսուհի մայր» բարձր կոչմանը։ «Մայրական փառքի» և «Մայրության մեդալի» արժանացել է 4.320.657 կին։ Տասը տարվա ընթացքում մեր պետությունը բազմազավակ մայրերին բաժանել է 34 միլիարդ 553 միլիոն 700 հազար ռուբլի նպաստ։ Մեր ռեսպուբլիկայում մոտ 900 կանայք արժանացել են «Հերոսուհի մայր» պատվավոր կոչման, 71.795 կին պարգևատրվել է «Մայրական փառք» շքանշանով և «Մայրության մեդալով»։ Մեր ռեսպուբլիկայում Սոցիալիստական Աշխատանքի Հերոսի բարձր կոչման արժանացած աշխատավորների կեսից ավելին կանայք են։ Կին աշխատողների շարքում ունենք 2 մինիստր, մինիստրի 4 տեղակալ։

Հայ կինը մասնակցում է իր հարազատ երկրի քաղաքական կյանքին։ Հայաստանի Կոմունիստական պարտիայի 17-րդ համագումարի դելեգատներից 66-ը կանայք էին, 7-ը կին ՍՍՌՄ Գերագույն Սովետի դեպուտատներ են։



Վերոհիշյալ բոլոր փաստերը ցույց են տալիս, որ կինը սովետական երկրում հասել է ազատ և երջանիկ կյանքի բարձունքներին։ Ժամանակին Վ. Ի. Լենինը գրել է, որ սովետական իշխանության սկսած գործը կարող է առաջ մղվել միայն այն ժամանակ, երբ միլիոնավոր կանայք կմասնակցեն նրա աշխատանքներին։ Այն ժամանակ ոչ մի տեսակի արտաքին և ներքին թշնամիներ սարսափելի չեն լինի մեր Հայրենիքի համար։ Մեծ Լենինի նախագծումները լիովին իրականացել են։

Սովետական Միության օրինակով տղամարդկանց հետ համահավասար իրավունքներով օգտվում են նաև ժողովրդական դեմոկրատիայի երկրների կանայք։ Նրանք ակտիվորեն մասնակցում են իրենց Հայրենիքի ճակատագրի հետ առնչվող բոլոր հարցերին։

Սակայն ծանր է կյանքը կապիտալիստական երկրներում և կապիտալի լծի տակ տառապող գաղութներում ու կիսագաղութներում։ Ռազմական կատաղի մրցավազքը, դոլարների կուտակման տենչը ըսպանել է նեխվող կապիտալիզմի ներկայացուցիչների մեջ այն ամենը, ինչ մարդկային է։ ԱՄՆ-ում, Անգլիայում, Ֆրանսիայում և կապիտալիստական այլ երկրներում շեշտակի

թափով փչնում է բնակչության կենսամակարդակը։ Դրան հակառակ, անընդհատ ավելանում են ռազմական ծախսերը և բնակչությունից գանձվող հարկերը։ ԱՄՆ-ում 10 միլիոն դպրոցական հասակ ունեցող երեխաներ պայմաններ չունեն սովորելու։ ԱՄՆ-ում, իրենց իսկ ռեակցիոն շրջանների տվյալներով, բացարձակ գործազուրկների թիվը 5 միլիոն է, իսկ մասնակի գործազուրկների թիվը 11 միլիոն։ Դանիայում գործազուրկ է յուրաքանչյուր 5 բանվորից մեկը։ Առավել ծանր է այնտեղ կանանց ու երեխաների վիճակը։ Աշխատավոր կանայք զուրկ են ընտրելու իրավունքից, նույն աշխատանքի համար նրանք ստանում են տղամարդուն վճարվող աշխատավարձի միայն 60—70 տոկոսը։ Թյուրքիայում, Իրանում, Մալայայում և այլ երկրներում կանայք ապրում են միջնադարյան խավարի ստրկական պայմաններում։ Աշխատավորների վիճակը կապիտալիստական, գաղութային և կիսագաղութային երկրներում ողբալի է։ Մայրությունն այնտեղ արհամարհվում է, գործազուրկ կանանցից շատերը կամ ինքնասպանություն են գործում և կամ փողոց նետվում։ Մեր երկրում ընդհակառակը, անընդհատ բարելավվում է աշխատավորների նյութական բարեկեցությու-



նը։ Ժողովրդի բարօրության հարցերին են նվիրված մեր պարտիայի ու պետության բոլոր որոշումները։

Սովետական ժողովրդի և նրա շուրջը համախմբված դեմոկրատական երկրների նվաճումներն ու հաջողությունները հանգիստ չեն տալիս ամերիկյան ռեակցիոն շրջաններին և նրանց արբանյակներին։ 120 տարի առաջ Եվրոպայում շրջող կոմունիզմի ուրվականը դարձել է համաշխարհային աշխատավորության ամենակարող մի ուժ։ Սովետական Միության համաշխարհային հեղինակությունը սարսափեցնում է աշխարհի իմպերիալիստներին։ Ինչպես նշել է մեծահանճար Լենինը, կապիտալիզմը վաղուց արդեն անցել է իր վերջին նեխման փուլին։ Սովը, արդյունաբերական ճգնաժամերը, գործազրկությունը, մասսայական աղքատացումը նեխվող կապիտալիստական երկրների մշտական բնորոշ ուղեկիցներն են։ Իմպերիալիստական պետությունները վայրագ մոլուցքով նախապատրաստվում են համաշխարհային երրորդ պատերազմի։ Այդ են վկայում նրանց պետական բյուջեից ռազմական ծախսերին հատկացվող վիթխարի գումարները, իմպերիալիստական պետություն-

ների միջև կնքված ու կնքվող ագրեսիվ պայմանագրերը։

Միջազգային ռեակցիայի և ագրեսիայի դեմ կանգնած է դեմոկրատական լագերը՝ Սովետական Միությունը, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկան և աշխարհի բոլոր խաղաղասեր մարդիկ։

Խաղաղության պահպանման համար պայքարի են ելել աշխարհի բոլոր ազնիվ կանայք։ Կանանց միջազգային դեմոկրատական ֆեդերացիայի մեջ միավորված է 140 միլիոնից ավելի կին։ Նրանք ամենաակտիվ կերպով պայքարում են պատերազմի հրձիգների դեմ։ Խաղաղության դրոշի տակ համախմբված են տարբեր ազգությունների ու դավանանքի կանայք, որոնց համար թանկ է խաղաղությունը և մանուկների անվրդով կյանքը։ Նրանք թույլ չեն տա, որ ագրեսորների նյութած պատերազմում մասնակցեն իրենց որդիներն ու ամուսինները։

Դեմոկրատական լագերի պայքարը հանուն խաղաղության և ժողովուրդների երջանկության՝ հաղթանակով կավարտվի, որովհետև դեմոկրատական լագերի ձայնը նոր կյանքի ձայնն է, նոր կյանքի պահանջը, իսկ նոր կյանքը մեծ ուժ է, անդիմադրելի, ինչպես երկրագնդի ընթացքը։

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ԳԱՐՆԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔՆԵՐԸ ԿԱՏԱՐԵՆՔ ԲԱՐՁՐ ԿԱԶՄԱԿԵՐՊՎԱԾՈՒԹՅԱՄԲ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը, ընդունված 1953 թվականի սեպտեմբերի 7-ին ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, Հայպետհրատ, 1953 թ.։

Անասնաբուծական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին ՍՄԿԿ Կենտկոմի պլենումի որոշումը, ընդունված 1955 թվականի հունվարի 31-ին ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի փետրվարի 2-ի համարում։

ՍՍՌՄ Գերագույն Սովետի երկրորդ սեսիայի արդյունքների վերաբերյալ նյութեր, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի փետրվարի 5-ի, 6-ի, 8-ի, 9-ի, 10-ի, 11-ի, և 12-ի համարներում։

Հացահատիկային տնտեսության հետագա շեշտակի

վերելքի համար, *«Ս. Հ.»-ի առաջնորդողը, տպագրված 1955 թվականի փետրվարի 16-ի համարում։*

Տարեկան 10 միլիարդ փութ հացահատիկի համար, *բարձր բերքի առաջավորների հոդվածներ և թղթակցություններ, տպագրված «Ս. Հ.»-ի փետրվարի 15-ի համարում։*

## 2. ՃԻՇՏ և ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏ ՕԳՏԱԳՈՐԾԵԼ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՏԵԽՆԻԿԱՆ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Մեքենա-տրակտորային կայանների աշխատանքի հետագա բարելավման միջոցառումների մասին ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի որոշումները, *առանձին բրոշյուր, Հայպետհրատ 1953։*

ՍՍՌՄ գյուղատնտեսության հետագա զարգացման միջոցառումների մասին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը, ընդունված 1955 թվականի հունվարի 31-ին *ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, տպագրված առանձին բրոշյուրով, 1953։*

Անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը, *ընդունված 1955 թվականի հունվարի 31-ին ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի փետրվարի 2-ի համարում։*



## 3. ԱՊԱՀՈՎԵՆՔ ՀԱՆՐԱՅԻՆ ՀՈՏԻ ԲԱՐՁՐ ՄԹԵՐԱՏՎՈՒԹՅՈՒՆԸ ՄՍՈՒՐԱՅԻՆ ՇՐՋԱՆՈՒՄ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը, *ընդունված 1955 թվականի հունվարի 31-ին ընկ. Ն. Ս. Խրուշչևի զեկուցման առթիվ, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի փետրվարի 2-ի համարում։*

Ն.Ս. ԽՐՈՒՇՉԵՎ— Անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնելու մասին, *զեկուցում ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումում 1955 թվականի հունվարի 25-ին, տպագրված է «Ս. Հ.»-ի փետրվարի 3-ի, 4-ի և 5-ի համարներում։*

Անասնապահական մթերքների արտադրությունն ավելացնելու համար, *անասնապահության առաջավորների հոդվածներ և թղթակցություններ, տպագրված «Ս. Հ.»-ի փետրվարի 17-ի համարում։*

Երկրին տանք ավելի շատ անասնապահական մթերքներ, *«Ս. Հ.»-ի առաջնորդող հոդվածը, տպագրված 1955 թվականի փետրվարի 17-ի համարում։*

Հայաստանի պարտիական կազմակերպության ակտիվի ժողովը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի փետրվարի 20-ի համարում։*

## 4. ԼԻՈՎԻՆ ՕԳՏԱԳՈՐԾԵՆՔ ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ԲՈԼՈՐ ՌԵԶԵՐՎՆԵՐԸ ՀԻՆԳԵՐՈՐԴ ՀՆԳԱՄՅԱԿԸ ԺԱՄԿԵՏԻՑ ՇՈՒՏ ԿԱՏԱՐԵԼՈՒ ՀԱՄԱՐ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Մ. Զ. ՍԱԲՈՒՐՈՎ— Զեկուցում Մոսկվայի Սովետի հանդիսավոր նիստում 1954 թվականի նոյեմբերի 6-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի նոյեմբերի 7-ի համարում։*

Արտադրության մեջ արմատավորել նորը, առաջավորը, *«Ս. Հ.»-ի առաջնորդող հոդվածը, տպագրված 1955 թվականի փետրվարի 19-ի համարում։*

*ՅԱ. ԶԱՐՈԲՅԱՆ— Ռեսպուբլիկայի արդյունաբերության և էներգետիկայի վիճակը ու զարգացման հեռանկարները, տպագրված «Պարտիական կյանք» ամսագրի 1955 թվականի № 1-ում։*

## 5. ՍՍՌՄ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅԱՆ ԽԱՂԱՂԱՍԻՐԱԿԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎ Միջազգային դրության և ՍՍՌՄ կառավարության արտաքին քաղաքականության մասին, *զեկուցում ՍՍՌՄ Գերագույն Սովետի երկրորդ սեսիայում, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի փետրվարի 9-ի և 10-ի համարներում։*



Ն. Ս. ԽՐՈՒՇՉԵՎԻ զրույցը ամերիկյան ժուռնալիստներ Վ. Ռ. Հերստի, Կինգսբերի Սմիթի և Ֆ. Կոնիֆի *հետ 1955 թվականի փետրվարի 5-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի փետրվարի 11-ի համարում։*

Ա. Ն. ԲՈՒԼԳԱՆԻՆԻ զրույցը ամերիկյան ժուռնալիստներ Վ. Ռ. Հերստի, Ջ. Կինգսբերի Սմիթի և Ֆ. Կոնիֆի *հետ 1955 թվականի փետրվարի 12-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի փետրվարի 15-ի համարում։*

Սովետական Միության մարշալ Գ. Կ. Ժուկովի զրույցը ամերիկյան ժուռնալիստներ Վ. Ռ. Հերստի, Կինգսբերի Սմիթի և Կոնիֆի հետ *1955 թվականի փետրվարի 7-ին, տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի փետրվարի 15-ի համարում։*

## 6. ԾԱՂԿՈՒՄ և ԲԱՐԳԱՎԱՃՈՒՄ ԵՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի հաջողությունները, Ռումինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի հաջողությունները, Գերմանական Դեմոկրատական

Ռեսպուբլիկայի նվաճումները, Բուլղարական Դեմոկրատական Ռեսպուբլիկան, Ալբանիան ընթանում է սոցիալիզմի ուղիով, *տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1954 թվականի 17, 18, 19, 20, 22 համարներում։*

Չեխոսլովակյան Ռեսպուբլիկայի նվաճումները, Հունգարական ժողովրդական Ռեսպուբլիկայի հաջողությունները, *տպագրված «Ագիտատորի բլոկնոտ»-ի 1955 թվականի № № 1 և 2-ում։*

---


**Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ**

**Отдел Пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 5 1955 г.**

*ՎՖ 08825 Պատվեր 207 Տիրաժ 8250*

*ՀՍՍՌ Կուլտ. մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8, 1955 թ., գինը 50 կոպ.։*